# ՀԱՅ ՄՇԱԿՈՅԹԻ ՕՐ

7 ՀՈԿՏ. ՇԱԲԱԹ ԻՐԻԿՈՒՆ ԺԱՄԸ 8.30ԻՆ Salle GAVEAU-ի ՄԷՋ
45, Rue la Boëtie Métro: Miromesnil

Կազմակերպուած Փարիզի եւ շրջականերու Հայ Մշակութային Միութիւններու եւ հաստատութիւններու կողմէ: Նախաձեռնութիւն՝ «ՀԱՅ ԳՐԱԿԱՆ ԱԿՈՒՄԲ»-ի:

Կը նախագահէ Պ. ՌՈՒԲԷՆ ԲԵՐԲԵՐԵԱՆ

Աննախընթաց երեկոյթ նուիրուած ամբողջութեամբ Հայ երաժշտութեան: գիտի նուագուին հին եւ նոր հեղինակներու երկեր մեծ մասամբ առաջին անգամ:

Երգիչներ.— Օր. ՄԱՐԳԱՐԻՏ ԲԱԲԱՅԵԱՆ եւ Օր. Ի. ԳԻՒԼԳԻՒԼԵԱՆ
Ջութակահար.— Պ. Յ. ԱՂԱԶԱՐԵԱՆ
Դաշնակահար.— Պ. Ս. ՄԱՐԳԻՍԵԱՆ
Երգչախումբը՝ «Կոմիտաս» ղեկավարութեամբ Պ. Ն. ՄԵՐԳԵՐԵԱՆԻ
» » «Կիլիկիա» » » Պ. Գ. ԱԼԷՄՇԱՀԻ
Սէնֆոնիկ մեծ նուագախումբ, բաղկացած 40 արուեստագէտներէ, ղեկավարութեամբ Պ. Պ. Գ. ԱԼԷՄՇԱՀԻ եւ Ա. ՊԱՐԹԵՒԵԱՆԻ

ՏՈՄՍԵՐԸ ԿԸ ԾԱԽՈՒԻՆ.— «Հայ Մշակոյթի» մրցման յանձնախումբի քարտուղարութեան Պ. Հ. Քալուեանի մօտ, 1, Rue l'Aqueduc, Paris (10). Tél. Nord 75-69: Salle Gaveau, 45, rue la Boëtie ամէն օր ժամը 9-12 եւ 2-6: Գրատուն Հ. Սամուէլ, 51, rue Mr. le Prince: Հայկական Տպարան, 61, rue Mr. le Prince: Համալսարան օրը կէսէն:

Բոլոր տոմսերը թուագրուած են՝ գիները 5 - 20 ֆրանք:

Կը խնդրուի կանխաւ ապահովել տեղերը:

Հաղորդ. միջոցներ.— Մեթրօ Miromesnil, օթօպիւս AT, ATbis, AO, AH, B, BE, CD, CE, CC: Համերգը պիտի վերջանայ գիշերուան ժիշդ 11.30ին





# ԵՐԵԿՈՅԹ - ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

«ՍԻՓԱՆ» ԵՐԳՉԱԽՈՒՄԲԻ

14 Հոկտ. Շաբաթ իրիկուն ժամը 9-30ին մինչեւ լոյս

HORTICULTURE-ի ՇԷՆՔԻՆ ՍՐԱՀԻՆ ՄԷՋ

84, Rue de Grenelle. Métro: Rue du Bac












Le Gérant : H. STEPHAN

Imprimerie A. DER (AGOPIAN)

17, Rue Damesme :-: PARIS (13e)

## Ոճրագործ Պարոնեան եւս դէպի թիւրան

Կը յիշուի թէ Զէյթունցի Գէորգ Պարոնեան 1932 մարտին վայրագօրէն ըսպաննած էր իր հօրեղբայրը, Իսի լէ Մուլինոյի մէջ: Ոճրագործը նոյն տարին նոյեմբերին դատուելով, դատապարտուեցաւ մշտնջենական աքսորի, դէպի Կուայանա:

Այս օրերս կարգի կը սպասէր չոգենաւ նստելու համար, երբ լուր տուին թէ ուրիշ յանցանք մը եւս գործած է: Արդարեւ, դատ բացուած էր իրեն դէմ, առանց տոմսակի ճամբորդած ըլլալով Փարիզէն Լիոն, ոճիրը գործելէ յետոյ: Պարոնեան Փարիզ փոխադրուելով, դատուեցաւ եւ դատապարտուեցաւ 25 ֆրանք տուգանքի:

ԸՆԿԵՐ ՄԱՍԻՍ ՍԱՑԼԱՆՃԵԱՆԷ կը խնդրուի հանդիպիլ «Յառաջ»ի խմբագրատունը, վաղը երկուշաբթի կէսօրէ վերջ:

19—10—33

# «ԴԱՇՏԵՐՁՈՀՊԱՇԿՈՄ»... ԿԱՄ ՊԱՏԿԵՐԱԶԱՐԴ ԽԵՂԿԱՏԱԿՈՒԹԻՒՆ

»»»օ«««

Շաբաթ երեկոյ, ռիւ Քատէի մէկ ...րճէկ սրահին մէջ հաւաքուեր էին 80-90 Հայեր եւ Ֆրանսացիներ, բո... ...րելու համար «Դաշնակ տեռոր»ին դէմ։

...կատակ շաբաթներ առաջ Փարի... ...ի արուարձաններու մէջ ցրուած ...ացիկներու եւ Ֆրանսայի Համայ... ...կուսակցութեան պաշտօնա... ...աթերթին՝ «Իւմանիթէ»ի կոչին, նա... ...րապահ Պ. Ֆրանսիս Ժուռտէն սոխ... ...ացաւ ժամը 9 եւ կէսին բացուած ...յտարարել միթինկը ... պարապ ա... ...ներու ներկայութեամբ։

...թէ սրահը կը փայլէր իր պարա... ...եամբ, բեմին վրայ, ընդհակա...

[illegible]

...երեւ վերջաբան, «38 տարի Դաշ... ...ցութեան շղթաներով շղթայ... ...ած» Ժորէնը աւելցուց թէ «Կամա... ...ներու Միութեան նպատակն է

բերան կ'աւրեն)։ Միջազգային Կարմիր ... կողմէ Շովէ նոյնպէս ... կորած՝ թեւերը ... ղակներ կը ճօճէր ... «տեռոր»ներու դէմ...

# ԹՈՒՐՔԻԱ

## ԵՒՐՈՊԱ ՈՒՍԱՆՈՂՆԵՐ ՂՐԿԵԼՈՒ ԽՆԴԻՐԸ

»»»օ«««

Ճումհուրիէթի մէջ, Պոլսոյ երեսփոխան Ալաէտտին Ճէմիլ վերեւի խորագրով երկար յօդուած մը ունի։ Կը թարգմանենք կարեւոր մասերը.—

Համալսարանի բարեկարգման խնդիրը իր ամբողջ մերկութեամբը երեւան հանեց դասախօսի ու Եւրոպա ուսանողներ ղրկելու խնդիրը։ Մեր կառավարութիւնը կը ճգնի համալսարանի բարեկարգման լաւագոյն միջոցը գտնել։

Եւրոպա ուսանող ղրկել...

Երեք բառերով արտայայտուող այս մեծ խնդիրը վերլուծել պէտք է։ Ու հարկ է անգամ մը եւս յիշել անոր մեծագոյն կարեւորութիւնը որ առաջին ակնարկով ուշադրութիւն չի գրաւեր։ Ըմբռնելու համար անոր նըշանակութիւնը, պէտք չէ մոռնալ ըսել թէ՝ մեր ազատագրական յեղափոխութեան միջոցներէն մէկն է։ Եթէ ...

[illegible]

...րող պիտի ըլլայ, դեռ երկար ատեն, մեր համալսարանը։

Հարկ է իրարմէ զատել Եւրոպա ուսանողներ ղրկելու խնդիրն ու Եւրոպայէն մեր երկիրը դասախօսներ բերելու խնդիրը։ Ուսանող ղրկելով, մենք լուծած պիտի ըլլանք նաեւ ապագային Եւրոպայէն դասախօսներ բերելու խնդիրը։ Բայց, իրական կացութիւնը ցոյց տանք, խոստովանելով որ ատիկա դեռ շատ հեռաւոր ապագայ մըն է։ Մենք, ինչ որ ալ ըլլայ, դեռ երկար ատեն կարօտ ենք օտար

[illegible]

Զենք կասկածիր որ, նոր նշանակուելիք կրթական նախարարը շատ կարեւոր խնդիր մը պիտի նկատէ ուսանողներ ղրկելու հարցը։ Մենք կ'ուզենք որ հոն գտնուող մեր ուսանողները իրենց ընտանիքներուն եւ ազգին գոհաբերութեանց համապատասխան ատիճանի մը հասնին։

### ԹՐՔԱԿԱՆ ՆԵՐՈՒՄԸ

Ինկիլիզէն կը գրեն թուրք թերթերուն.— Թէեւ կ'ըսուի որ, քաղաքական դատապարտեալներն ալ պիտի օգտուին այս ներումէն, բայց ասիկա վճռապէս յայտնի չէ։

Կարգ մը թերթերու գրածին պէս, Եւրոպա գտնուող Ատնան պէյի ներումը խնդրոյ առարկայ չի կրնար ըլլալ, որովհետեւ դատապարտութիւն չունեցող Ատնան պէյ իր փափաքով Եւրոպա կը գտնուի։ Թէեւ 150նոցներու ներումը խնդրոյ առարկայ չէ, բայց անոնցմէ ոմանք, ինչպէս Րէֆիք Հալիտ դիմում կատարած են կառավարութեան եւ Ազգ. Մեծ Ժողովին։

Ցամենայն դէպս, ներման օրէնքին մասին գաղտնապահութիւն կը տիրէ, որով գրուածները ենթադրութիւններ են։

ԿԸ ԽՆԴՐՈՒԻ յօդուածագիրներէն եւ թղթակիցներէն իրենց գրութիւնները գրել թուղթին մէկ երեսին վրայ եւ մելանով։

# ՄԱՄՈՒԼ

## Խորհրդածութիւններ

»»»·«««

«Յուսաբեր» հետեւեալ խորհրդածութիւնները կ'ընէ խմբագրականի մը մէջ (5 հոկտ.)։

— «Թուրք մամուլը չարունակ առիթներ կը ստեղծէ իր դուրգուրանքն ու հիացումը յայտնելու համար «ըրջախոհ» եւ «ողջամիտ» ռամկավարներուն։ «Միլլիյէթ» անկարող եղաւ տիրանալ իր ջիղերուն եւ չզետեղել Վ. Թէքէեանի լուսանկարը իր էջերուն մէջ, անոր հասցէին միաժամանակ քանի մը դրուատալից տողեր շըռայլելով։

Ու նոյն վերաբերումը նաեւ միւս բոլոր ռամկավար վարիչ դէմքերու եւ ռամկավար թերթերու նկատմամբ։

Այս վերջինները առոււ — իրիկուն երդում — պատրաստ կ'ըլլան բոլոր արութիւններու վրայ հայ մարդը համոզելու համար, թէ իրենք հոգիով, մարմնով ու գրչանով նուիրուած են միայն Հայաստանի։

[illegible]

...մը խորհրդածել մեր մատնանշած ճշմարտութեանց վրայ»։

# ԶԱՅՆԵՐ ԳԱՒԱՌԷՆ

## ՍԵԲԱՍՏԱՑԻՆԵՐԸ ՏԷՍԻՆԻ ՄԷՋ

ՏԷՍԻՆ.— Սեբաստիոյ եւ նահանգային ուսումնասիրաց միութեան ընդհ. ժողովը տեղի ունեցաւ սեպտ. 24ին եւ ընտրեց նոր վարչութիւնը, հետեւեալ անդամներով.— Պ. Պ. Մինաս Պարտազեան՝ ատենապետ, Յովակիմ Մատօեան՝ գանձապահ, Լեւոն Ղարիպեան՝ քարտուղար, Պալէ Թաշճեան եւ Միհրան Ղազարեան խորհրդականներ։

Նոր եւ հին վարչութիւնները եւ երեք հոգինոց յանձնախումբը քննելով երեք տարուան հաշիւները որ եւ է թերութիւն չգտան եւ շնորհակալութիւն յայտնեցին գանձապահ Պ. Մ. Պարտազեանին։

(Կնիք)



«ՅԱՌԱՋ»Ի ԹԵՐԹՕՆԸ (23)

# ԻՄ ՏԵՍԱԾՆԵՐՍ՝ 1915-1924

— օ.օ —

## 8.— ՆՈՐԷՆ ԿԸ ՓԱԽՉԻՄ

— օ —

— Եկուր մեր պարտէզը, ուր կայ վարունգ, լոլիկ, ... քիչ ատենէն պիտի ունենանք նաեւ ձմերուկ։ Ա... ...մէ կ'օգտուիս, ես ալ մօրմէս հաց կը գողնամ եր... ...քեզի համար, այսպէսով կը մնաս մեր քով։

— Լաւ, ըսի, հապա ձմե՞ռը։ Օ՜հ, մինչեւ ան ատեն ...քս քեզ լաւ մը կը ճանչնան, եւ ձմեռը կը մնաս մեր ...։

Հետեւեցայ իրեն եւ գացինք պարտէզ, ուր գիշերե... ...համար խշտեակ մըն ալ կար ինչպէս նաեւ իրենց ...ծնկեցը։

[illegible]

ըսաւ.

— Հայրս կ'ըսէ թող մեզի հալալ ընէ ու երթայ իր գլխուն ճարը նայի։

[illegible]

հանիլ։ Շատ չանցած հասաւ պանիրը որ այնքան առատ էր այդ նահանգին մէջ։ Շատերը հացի յաւելցնելիք քանի մը փարան այլեւս պանիրի կուտային։ Իսկ քիւրտ ...ութիւնը կը չարունակէր հոտած ոսկորներ

[illegible]

Ուրիշ հեռագրի մը համաձայն, Պերլինի խորհրդային առեւտրական պատուիրակութիւնը հազարէն հարիւրի զեղչած է իր պաշտօնեաներուն թիւը:

## ՏԷՐՏԷՐՆԵՐԸ ՓՈԽԱՆԱԿՈՒԵՑԱՆ ՀԱՄԱՅՆԱՎԱՐՆԵՐՈՒՆ ՀԵՏ

Ուրբաթ օր անսովոր փոխանակութիւն մը տեղի ունեցաւ խորհրդային իշխանութեան եւ լիթուանական կառավարութեան միջեւ: Եպիսկոպոս մը, 13 հոռմէական քահանաներ եւ չորս աշխարհականներ, որոնք երկար ատենէ ի վեր բանտարկուած էին Խ. Միութեան մէջ, փոխանակուեցան 26 համայնավարներու հետ, որոնք իրենց կարգին բանտարկուած էին Լիթուանիոյ մէջ: Փոխանակութիւնը տեղի ունեցաւ սահմանագլուխին վրայ:

## ՕՏԱՐ ԸՄՊԵԼԻ ԶՊԻՏԻ ԳՈՐԾԱԾՈՒԻ

Նիւ Եորքէն կը հեռագրեն թէ նախագահ Րուզվէլթ արգիլած է օտար ըմպելիներու ներածումը:

Օտար առեւտրականները կը պատրաստուէին երեք միլիոն կալոն ըմպելի ներածելու, որպէսզի կարելի ըլլայ գոհացնել Ծնունդի տօնական պէտքերը: Այս արգելքը հաստատելով, Մ. Նահանգները քանի միլիոն տոլար եկամուտ պիտի կորսնցնեն:

Թերթերը կ'ըսեն թէ նախագահ Րուզվէլթ կ'ուզէ ճնշել օտար պետութեանց, մասնաւորապէս Ֆրանսայի վրայ, առեւտրական նպաստաւոր պայմաններ ստանալու եւ պատերազմական պարտքերու խնդիրը կարգադրելու համար:

## Կացութիւնը Գերմանիոյ մէջ

### ԸՆԴՀ. ՆԵՐՈՒՄ ԿԸ ՊԱՏՐԱՍՏԵՆ?

Պերլինէն կը հեռագրեն թէ՝ կառավարութիւնը ծրագիր մը պատրաստած է, ընդհ. ներում շնորհելու համար: Այս ներումէն պիտի օգտուին քաղաքական յանցաւորները եւ կեդրոնացման բանակատեղիներու մէջ արգելափակուած կասկածելիները:

⁂ Բայխստակի հրկիզման դատին առթիւ, առջի օր իրրեւ վկայ լսուեցան երեք նացի պետեր, — Պրէսլաուի եւ Փոցտամի ոստիկանութեան վերատեսուչները եւ տեղակալ մը: Առաջինը ճամբորդութեան մէջ ըլլալով, բացակայ էր: Ասոնք օտար մամուլին մէջ ամբաստանուած են թէ հիթլէրական ջոկատի մը հետ կրակի տուած են խորհրդարանը, ներս մտնելով գետնայարկէն: Կարելի չեղաւ նոր լուսաբանութիւն ստանալ տրուած պատասխաններէն:

### ՏԷՐՏԷՐՆ ԱԼ ԲՌՆԿԱԾ ԷՐ...

Թուլուզի մէջ, հաստափոր տէրտէր մը ծանրապէս վիրաւորեց ընտանիքի մը երեք անդամները, հայրը, մայրը եւ մանկամարդ աղջիկը: Աշխարհական հագուստ հագած ըլլալով, կրցաւ փախչիլ: Պատճառը... սիրային է: Բայց ո՞րու հետ — աղջկա՞ն թէ մօրը...









## ՆԱՄԱԿԱՏՈՒՓ

### ՍՏԱՑԱՆՔ

ՄՕՆԹՍԵՐՐԱԼ, Մ. Ա. — 50 ֆրանք:
ԼԱՆԷՍԹԷՐ, Կ. Ա. — 35:
ՍԷՆ Թ'ՕՊԱՆ, ԽԱՉ. — 35:
ՍԷՆԹ ՈՒԷՆ, Գրիգ. — 140:
ԹՈՒԼՈՒԶ, Ղ. Մ. — 50:
ՄԱՐՈՔ, Պօղ. — 140:
ՊԼԻՏԱ, Պ. Ա. — 70:
ՐՈՒԷՍԷ ՎԱՍԷ, Պիլ. — 35:
ՓՐԻՒԱԶ, Գ. Խ. — 35:
ՊԻՍԷԹՐԸ, Յար. — 46.70:
ՊԵՐԼԻՆ, Իփլ. — 200:



Imprimerie A. DER (AGOPIAN)
Le Gérant : H. STEPHAN
17, Rue Damesme :-: PARIS (13e)

